Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ Կենտկոմի
գաղափարական
աշխատանքի
բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՅԻՍ 9 1963



ՖԻԴԵԼ ԿԱՍՏՐՈ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։*

## СОДЕРЖАНИЕ




**Адрес редакции** — ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.





# ԱԳԻՏԱՏՈՐԸ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ԱԿՏԻՎ ՄԱՐՏՆՉՈՂ Է

*Հարազատ կոմունիստական պարտիան մեր երկրում ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման բնագավառում իրագործելով խոշոր միջոցառումներ, միևնույն ժամանակ ամենօրյա հոգատարություն է ցուցաբերում գաղափարական-քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացման նկատմամբ։*

*Պարտիան գաղափարական աշխատանքը համարում է կոմունիզմի կառուցման արմատական խնդիրների հաջող լուծման կարևորագույն միջոց։ Դա հաստատվում է մեր երկրի կյանքի ամբողջ փորձով՝ սկսած սովետական իշխանության ամենաառաջին քայլերից։*

*Հայտնի է, որ աշխատանքի ամենաբարձր արտադրողականության հասնելը միայն տնտեսական խնդիր չէ։ Դրա հաջող իրականացման համար պահանջվում է հասարակության բոլոր անդամների կոմունիստական*

բարձր գիտակցականություն ու կուլտուրականություն։ Ահա թե ինչու, պատմական այս ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովրդի բոլոր ջանքերն ուղղված են պարտիայի XXII համագումարի, ՍՄԿՊ նոյեմբերյան պլենումի որոշումների իրականացման գործին, երբ ամբողջ աշխարհում տեղի է ունենում երկու գաղափարախոսությունների՝ սոցիալիստական ու բուրժուական գաղափարախոսությունների սուր պայքար, պայքար մարդկանց մտքերի ու հոգու համար, մեր պարտիան անհրաժեշտ է համարում աշխատավորների, սովետական մարդկանց շրջանում է՛լ ավելի ուժեղացնել գաղափարական, քաղաքական - մասսայական աշխատանքը։

Այդ տեսակետից հսկայական նշանակություն ունեցան գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի ու կառավարության ղեկավարների տեղի ունեցած վերջին երկու հանդիպումները, որոնք այնքան լայն արձագանք գտան ստեղծագործական աշխատողների շրջանում։

Սովետական բազմազգ ստեղծագործական ինտելիգենցիայի ներկայացուցիչների հետ տրադիցիոն հանդիպումները վառ կերպով ցույց տվեցին, թե ինչն է որոշում արդի պայ-



մաններում գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրը։ Հանդես գալով գրականության և արվեստի գործիչների հետ վերջին հանդիպման ժամանակ, Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Կոմունիզմի համար մեր կողմից մղվող ճակատամարտում կարևոր նշանակություն ունի բոլոր մարդկանց դաստիարակումը կոմունիստական իդեալների ոգով։ Եվ դա ներկայումս մեր պարտիայի գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրն է։ Մենք պետք է մարտական պատրաստության մեջ դնենք պարտիայի գաղափարական զենքի բոլոր տեսակները, որոնց թվին է պատկանում նաև կոմունիստական դաստիարակության այնպիսի զորեղ միջոց, որպիսին են գրականությունն ու արվեստը»։

Մեր երկրում գեղարվեստական ստեղծագործությունը դարձել է համաժողովրդական գործի անխզելի մասը, նա անբաժանելի է կոմունիզմի կառուցումից, մշտապես գտնվում է պարտիայի ու ժողովրդի տեսադաշտում։

Սովետական գրականությունը և արվեստը կոչված են գեղարվեստական վառ պատկերների միջոցով արտահայտել կոմունիզմի կառուցման մեծ ու հերոսական ժամանակը, ճշմարտացիորեն արտացոլել մեր կյանքում

նոր, կոմունիստական հարաբերությունների հաստատումն ու հաղթանակը։

Ահա թե ինչու, շատ անհրաժեշտ է, որպեսզի սովետական գրականության և արվեստի մասին զրույցներ անցկացնելիս, մեր ագիտատորները նորից ու նորից դիմեն ընկեր Ն. Ս. Խրուշչովի այդ ճառին, խորապես ըմբռնեն նրանում բերված գրականության և արվեստի վերաբերյալ մարքս-լենինյան դրույթներն ու սահմանումները և պարզաբանեն այն իրենց ունկնդիրներին։

Վլադիմիր Իլյիչ Լենինը նշել է, որ գրականությունը և արվեստը պատկանում են ժողովրդին, որ դրանք պետք է ծառայեն բանվորների ու գյուղացիների շահերին, միավորեն ժողովրդական մասսաների զգացմունքները, մտքերն ու կամքը, ոտքի հանեն նրանց։

Մեր ագիտատորներն իրենց ամենօրյա աշխատանքով համոզվել են, որ զրույցի ընթացքում գրականությունից ու արվեստից բերված դիպուկ օրինակը տպավորիչ է դարձնում ագիտատորի խոսքը, ավելի մատչելի ու հասկանալի դարձնում այն, որը հասնում է ունկնդրի մտքին ու սրտին և մոբիլիզացնում է նրան, ոտքի հանում, աշխատանքային նոր սխրանքների կոչում։



Խորապես մտահոգված լինելով սովետական գրականության և արվեստի ապագայի, նրանց հետագա զարգացման համար, մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեն անդադրում հոգ է տանում, որպեսզի նրանք կանգնած լինեն սոցիալիստական ռեալիզմի դիրքերում, չենթարկվեն ամեն տեսակ բուրժուական խեղաթյուրումների։

Հանդիպման ժամանակ պարտիական հենց այդ դիրքերից էլ սկզբունքային խոսակցություն տեղի ունեցավ սովետական գրականության և արվեստի զարգացման ուղիների ու վերջին տարիների ընթացքում կուլտուրական կյանքի ձեռք բերած նվաճումների մասին։ Ն. Ս. Խրուշչովի ճառում, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար Լ. Ֆ. Իլյիչովի ճառում և հանդիպման մասնակիցների ելույթներում արդարացի քննադատության ենթարկվեցին գրականության ու արվեստի այն ստեղծագործությունները, որոնք բովանդակում են սխալ դրույթներ, որոնցում սխալ գնահատական է տրվում մեր երկրի կյանքում տեղի ունեցած բազմաթիվ կարևոր իրադարձություններին ու երևույթներին։

Պարտիայի ու կառավարության ղեկավարների ճառերը, հանդիպումների, խորհրդակցությունների նյութերը այժմ գտնվում են

սովետական գրողների, կոմպոզիտորների, նկարիչների, մեր ամբողջ ինտելիգենցիայի և լայն հասարակայնության ուշադրության կենտրոնում։ Ամենուրեք պարտիական կազմակերպությունները, ստեղծագործական կոլեկտիվները լայնորեն քննարկում են գրականության ու արվեստի վերաբերյալ հարցերը, ռադիոյով ու հեռուստատեսությամբ գրեթե ամեն օր հանդես են գալիս գրականության և արվեստի գործիչներ։ Այդ բոլորը լավագույն նյութեր են մեր ագիտատորների հերթական զրույցների համար։

Ընթացիկ տարվա մարտի 29-ին տեղի ունեցավ մեր ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովը, որն անցավ սովետահայ գրողների ու արվեստագետների տաղանդը կոմունիզմի կառուցման մեծ գործին ծառայեցնելու նշանաբանով։

Ժողովում նշվեց, որ սովետական գրականության և արվեստի բուռն զարգացմանը մեծապես նպաստել են նաև սովետահայ գրողներն ու արվեստագետները։ Եղիշե Չարենցի, Ակսել Բակունցի, Հակոբ Հակոբյանի, Մարտիրոս Սարյանի, Արամ Խաչատրյանի և ուրիշ վարպետների խոր գաղափարային ու բարձրարվեստ ստեղծագործությունները



սովետական կուլտուրայի գանձարանի գոհարներից են։

Սովետահայ գրողների և արվեստագետների այժմյան սերունդը՝ ավագագույնից մինչև կրտսերը, շարունակում է զարգացնել, նոր աստիճանի բարձրացնել մեր ժողովրդի հոգևոր կուլտուրայի տրադիցիաները։ Այդ առաջընթացի ամեն մի քայլ պայմանավորված է այն անդուլ հոգատարությամբ և ուշադրությամբ, որ ցուցաբերում է կոմունիստական պարտիան գրականության և արվեստի զարգացման նկատմամբ։ Ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ժողովն այդ հոգատարության և ուշադրության լավագույն ապացույցներից մեկն էր։ Ակտիվի ժողովում լենինյան սկզբունքայնությամբ, ստեղծագործական, անկաշկանդ, բարեկամական մթնոլորտում գրականության և արվեստի նվաճումների կողքին նշվեցին նաև մի շարք վրիպումներ ու սխալներ, որոնց վերացումն այսօր մեր ստեղծագործողների առաջնահերթ խնդիրն է։

Ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովի մասին մամուլում հրապարակված ինֆորմացիոն նյութերը նույնպես շատ օգտակար կլինեն մեր ագիտատորներին։

ՍՄԿՊ XXII համագումարի կողմից սովե-

տական ժողովրդի առջև դրված պատմական խնդիրները պահանջում են է՛լ ավելի բարձրացնել աշխատավորների ամենալայն մասսաների կոմունիստական գիտակցականությունը։ Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները քննարկվելու են ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի մայիսի 28-ին հրավիրվող պլենումում։

Ամենուրեք պարտիական կազմակերպությունները, գաղափարական ճակատի աշխատողները, ստեղծագործական ինտելիգենցիայի շրջանները ծավալել են լայն աշխատանք այդ կարևոր իրադարձությունը՝ պարտիայի Կենտրոնական կոմիտեի առաջիկա պլենումը դիմավորելու համար։

Գաղափարական աշխատանքի կատարելագործման, կոմունիստական շինարարության ասպարեզում նրա դերի ու նշանակության բարձրացման հարցերին էր նվիրված Անդրկովկասի ռեսպուբլիկաների գաղափարական աշխատողների խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ Թբիլիսիում, այս տարվա ապրիլի 19-ից 20-ը։

Խորհրդակցությունում նշվեց, որ այժմ գաղափարական աշխատանքի, կոմունիստական դաստիարակության առաջնահերթ խնդիրն է՝ ավելի ակտիվորեն, ավելի գործուն կերպով օգնել պարտիային ու ժողովրդին



կենսագործելու այն ամենը, ինչ նախատեսված է կոմունիստական շինարարության մեծ ծրագրով։

Խորհրդակցության մասնակիցներն ընդգծում էին, որ գաղափարական աշխատանքն ինքնանպատակ բան չէ, այն պետք է ենթարկված լինի սովետական մարդու համակողմանի, ներդաշնակ զարգացմանը, բարձր գաղափարայնության, բարոյական մաքրություն ունեցող մարդու բնավորության, նրա հոգևոր կերպարի ձևավորման ազնիվ գործին, մարդ, որի համար ստեղծագործական աշխատանքը դարձել է սրբազան պարտականություն։ Աշխատանքի նկատմամբ սերը, հարգանքը, ոգեշունչ ձգտումը վեհացնում և ազնվացնում է մարդուն, նրան դարձնում նոր հասարակարգի արժանավոր ներկայացուցիչը, ամենից համոզիչ կերպով վկայում է նրա նվիրվածությունը կոմունիզմի գործին։ Այս ամենն էլ կազմում է աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ կատարվող բազմակողմանի աշխատանքի հիմքը, նպատակը, կենդանի միջուկը։

Խորհրդակցությունում հատկապես շեշտվեց, որ այդ աշխատանքի նպատակն է լիովին հաղթահարել բուրժուական հայացքներն ու բարքերը, որոնք անհամատեղելի են սո-

վետական մարդու արժանապատվության հետ։ Գաղափարական ճակատում վճռականապես բացառված է որևէ «խաղաղ գոյակցություն», այլապես նա չի լինի մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարների հաստատմանն ու հետագա զարգացմանն ակտիվորեն մասնակցող մարտական ճակատ։

Մեծ Լենինը պարտիային սովորեցրել է միշտ մաքուր պահել գաղափարական զենքը։ Այժմ պարտիայի կողմից աննախընթաց մասշտաբներով հաջողությամբ իրականացվող գաղափարական աշխատանքը վկայում է անսասան հավատարմությունը լենինյան այդ պատգամին։ Ժամանակակից գաղափարական աշխատանքի, մարքս-լենինյան մտքի բարձր մակարդակի մասին ամենից համոզեցուցիչ կերպով վկայում է մեր դարաշրջանի տեսականականավոր փաստաթուղթը՝ ՍՄԿՊ նոր ծրագիրը, որն այնպիսի ոգեշունչ, կենսահաստատ ուժով արտահայտեց ամբողջ առաջադեմ մարդկության ամենապայծառ իդեալներն ու հույսերը։

Ագիտատորը գաղափարական ճակատի ակտիվ մարտնչող է։ Նա այժմ պետք է ամեն օր զբաղվի քաղաքական-մասսայական աշխատանքով, աշխատավորների ջանքերն ուղղի կոմունիստական շինարարության խնդիրների լուծման մեծ նպատակին։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Օրեցօր նոր և ավելի ուժգին թափով է ռեսպուբլիկայում ծավալվում սոցիալիստական մրցությունը 1963 թվականի պլանները գերակատարելու համար։ Այդ նկատի ունենալով վերջերս ունկնդիրների հետ զրույց ունեցա ստանձնած պարտավորությունները կատարելու մասին։

Զրույցը սկսեցի պատմելով մեր գործարանի ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին։ Ես նրանց հիշեցրեցի, որ գործարանի ամբողջ կոլեկտիվը պարտավորվել է տարեկան պլանը կատարել 1963 թվականի դեկտեմբերի 25-ին։ Իսկ այժմ գործարանի բոլոր ցեխերը եռանդով պայքարում են արտադրական պլանները 103,3 տոկոսով կատարելու համար։

Խոսելով այն մասին, որ գործարանի ստանձնած պարտավորությունների կատար-

ման ու գերակատարման գործում մեծ խըն-
դիրներ են դրված մեր ցեխի առջև, ըն-
կերներին հանգամանորեն պատմեցի, թե
ինչ ենք պարտավորվել մենք, մտնելով մըր-
ցության մեջ։ Մենք պարտավորվել ենք,— ա-
սացի ես,— ցեխի համախառն արտադրանքի
տարեկան պլանը կատարել դեկտեմբերի
25-ին, փորձարկման կայանից հետ վերա-
դարձվող շարժիչների քանակը հասցնել մի-
նիմումի, խոտանի պակասեցման հաշվին
իջեցնել ինքնարժեքը նախատեսվածի 0,1
տոկոսի չափով, բարձրացնել աշխատանքի
արտադրողականությունը։ Ահա, արդեն ան-
ցել է չորս ամիս, ինչ պայքարում ենք այդ
պարտավորությունների կատարման համար։
Պետք է ասել, որ անցած ամիսներին մեր
ցեխի բանվորները ձեռք են բերել զգալի
հաջողություններ։ Այսպես, օրինակ, մեր
ցեխը հունվար ամսվա պլանը կատարեց
103, իսկ համախառն արտադրանքի պլանը՝
105 տոկոսով։ Նույնպիսի հաջողությամբ
փակեցինք փետրվար ամիսը՝ պլանը կա-
տարելով 103, համախառն արտադրանքի
պլանը՝ 110 տոկոսով, մարտ ամսվա պլանը՝
104,5 տոկոսով, իսկ համախառն արտա-
դըրանքի պլանը՝ 114,5 տոկոսով։



Պայքար գերազանց որակի արտադրանքի
համար, չտալ խոտան արտադրանք. ահա
մեր աշխատանքի նշանաբանը։ Այս գործում
ևս ունենք հաջողություններ։ Եթե հունվար
ամսին փորձարկման կայանից հետ վերա-
դարձված շարժիչները կազմում էին 9 տո-
կոս, ապա փետրվարին այն իջեցրինք 5 տո-
կոսի։ Մարտ և ապրիլ ամիսներին այդ տո-
կոսը ավելի պակասեց։

Իհարկե, մեր այս հաջողությունները ցեխի
համերաշխ կոլեկտիվի լավագույն, հայրե-
նանվեր աշխատանքի արդյունք են։ Մեր
ցեխի յուրաքանչյուր բանվոր պայքարում է
բարձր պահել սոցիալիստական մրցության
դրոշը, թողարկել միայն առաջնակարգ ար-
տադրանք, չտալ ոչ մի խոտան։

Լավագույն աշխատանքի օրինակ է ցույց
տալիս Ս. Շահինյանի բրիգադը, որը պայ-
քարում է կոմունիստական աշխատանքի
կոչմանն արժանանալու համար։ Բարձր
արտադրողականությամբ աշխատելու գոր-
ծում, ինչպես գիտեք, շատ կարևոր նշանա-
կություն ունի բանվորի աշխատատեղի վի-
ճակը, մաքրությունը, հարմար լինելը և
այլն։ Այս հարցերը չվրիպեցին Ս. Շահին-
յանի բրիգադի անդամների ուշադրությու-
նից։ Կազմակերպված շաբաթօրյակի միջո-

ցով կարգի բերվեց ամբողջ ցեխը, այն մա-
քըրվեց ավելորդություններից։ Ստեղծվեց աշխատանքի լավագույն պայմաններ։

Լայն թափ է ստացել Ս. Երանոսյանի բրիգադի և Ս. Շահինյանի կոմունիստակա-նի համար պայքարող բրիգադի միջև սկըս-ված սոցիալիստական մրցությունը։ Ճիշտ է, դեռևս Երանոսյանի բրիգադի անդամները չեն հասել կոմունիստականի համար պայ-քարող բրիգադին, բայց իրենց օրվա առա-ջադրանքները կատարում են 120 տոկոսով։ Մենք բոլորս հույս ունենք, որ Երանոսյա-նի բրիգադն էլ շուտով կարժանանա կո-մունիստական աշխատանքի համար պայ-քարող բրիգադի պատվավոր կոչմանը։

Ստանձնած պարտավորությունները լա-վագույն ցուցանիշներով կատարելու համար, գրույցի ընթացքում նշեցի առաջավոր բան-վորներ Յու. Աբրահամյանի, Վ. Պողոսյանի, Մ. Ասրյանի, Հ. Հովհաննիսյանի, Կ. Մար-կոսյանի և շատ ուրիշների օրինակելի աշ-խատանքը։ Այդ կապակցությամբ ունկնդիր-ներին պատմեցի այն մասին, թե ինչպես հղկող բանվորներ Վ. Պողոսյանը և Ս. Մարգարյանը մրցության մեջ են մտել փ-սեռներ մշակող խառատներ Ֆ. Մկրտչյանի







և Ռ. Հարությունյանի հետ ու աչքի ընկնող հաջողությունների հասել։

Ցեխի յուրաքանչյուր բանվոր ձգտում է որակով արտադրել և շատ արտադրել։ Ինչ-պես կարելի է գովեստով չխոսել վահանիկ-ներ մշակող Մ. Ասրյանի մասին։ Նրա օրվա պլանն է՝ մշակել 150—200 հատ վահանիկ, բայց նա միշտ մեկ օրում մշակում է 250—300 վահանիկ։ Առաջավոր բանվոր Հ. Հով-հաննիսյանը օրվա պլանները գերակատա-րում է 50—100 տոկոսով և այլն։

Մեր ցեխի ստանձնած պարտավորու-թյունների կատարման գործում մեծ նշա-նակություն ունի ընկերական, փոխադարձ օգնությունը։ Պետք է ասել, որ այս գործն էլ մեզ մոտ լավ է կազմակերպված։ Առա-ջավոր բանվորներ Մ. Աբրահամյանը, Հ. Կարապետյանը ոչ միայն կատարում են իրենց օրվա առաջադրանքները, այլև լուրջ, ընկերական օգնություն են ցույց տալիս հետ մնացող բանվորներին։ Նրանք հա-ճույքով սկսնակ բանվորներին հաղորդում են իրենց աշխատանքային փորձը, կոփում նրանց ոչ մի դժվարության առաջ չխո-նարհվող բանվորական բնավորությամբ։

Զրույցի այս մասում գովաբանեցի առա-ջավոր բանվոր Հ. Կարապետյանին, որը

օգնելով աշխատանքում հետ մնացող Ե. Քոչարյանին, սովորեցրեց նրան արտադրական հմտություն։ Այժմ Քոչարյանը դարձել է օրինակելի բանվոր և ոչ միայն կատարում, այլև շատ հաճախ գերակատարում է օրվա առաջադրանքները։

Խոսել ցեխի հաջողությունների մասին և չխոսել ցեխի ավագ վարպետ Ս. Գևորգյանի մասին, հնարավոր չէ։ Ուստի զրույցի ընթացքում պատմեցի նաև ընկ. Ս. Գևորգյանի մասին, որը մեր գործարանում աշխատում է 1942 թվականից։ Աշակերտից նա այժմ հասել է ցեխի ավագ վարպետի դըժվար ու պատասխանատու աշխատանքին։ Միշտ նրա ուշադրության կենտրոնում են իր ցեխի բոլոր սկսնակ բանվորները։ Ավագ վարպետի օգնությունը շատ շատերն են զգացել և միշտ գոհ մնացել նրանից։ Հիշում եմ, որ Լ. Նազարյանը հաճախ խոտան արտադրանք էր տալիս։ Բանվորը կարգապահ էր, կատարում էր սահմանված քանակի աշխատանք, բայց արտադրում էր խոտան։ Ցեխի ավագ վարպետը ուշադրությամբ հետևեց նրա աշխատանքին։ Միասին ստուգեցին հաստոցը։ Պարզվեց, որ Լ. Նազարյանը լուրջ ուշադրություն չի դարձնում կտրիչների անխափան աշխատանքի վրա։



թերությունը վերացվեց։ Մի ժամանակ ցեխի տեխնիկական վերահսկողության բաժինը ետ էր վերադարձնում Լ. Նազարյանի մշակած դետալները, իսկ այժմ մենք բոլորս նրանից գոհ ենք։

— Մեր խնդիրն է,— ամփոփում եմ ես, — շարունակել աշխատել եռանդով։ Մենք երբեք չպետք է մոռանանք, որ միայն որակյալ ու ավելի շատ արտադրանք թողարկելով կարող ենք շահել միջցեխային սոցիալիստական մրցության փոխանցիկ կարմիր դրոշը։

Զրույցն ավարտելուց հետո, շատ բանվորներ խոսեցին։ Նրանք բոլորն էլ միահամուռ կերպով պաշտպանեցին իմ առաջարկությունը և պատրաստակամություն հայտնեցին լավագույն աշխատանքով նվաճել փոխանցիկ դրոշը ու միշտ բարձր որակով կատարել ստանձնած պարտավորությունները, ժողովրդական տնտեսությանը տալ ավելի շատ էլեկտրաշարժիչներ։

Հ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի ագիտատոր, մեխանիկական հավաքման Մ—3 ցեխի պետ

# ՋՐՈՒՅՑ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Տարեցտարի աճում է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան (1953 թ.) պլենումից հետո ռեսպուբլիկայի բոլոր 630 կոլտնտեսությունները և 134 սովխոզները կազմակերպել են իրենց սեփական մեքենա-տրակտորային պարկը։*

*Վերջին 10 տարիների ընթացքում ռեսպուբլիկայի տրակտորային պարկն աճել է 1,8 անգամ, ըստ որում յոթնամյակի անցած 3 տարիների ընթացքում տրակտորների ներմուծումը 1953—1958 թվականների համեմատությամբ, ավելացել է ավելի քան 3 անգամ, կոմբայններինը՝ 2 անգամ։ Սակայն բանը միայն տեխնիկայի քանակական աճը չէ, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ ինչպես տրակտորային և կոմբայնային պարկը, այնպես էլ գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները վերջին տարիներում մեծ չափով ենթարկվել են նաև որակական փոփոխությունների։*

*Նախկին ՍՏԶ, ԽՏԶ, «Ունիվերսալ» և այլ մարկաների տրակտորների փոխարեն կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն Ս—100, Տ—75, Տ—38, Տ—28, ԴՏ—54—Ա և այլ մարկայի դիզելային հզոր, միջին և փոքր հզորության տրակտորներ։ Կոմբայնների պարկի մոտ 75 տոկոսը կազմում են ՍԿ—4, ՍԿ—3 և այլ մարկաների ինքնագնաց կոմբայններ։ Միայն վերջին 3 տարվա ընթացքում կոլտնտեսությունները և սովխոզները ձեռք են բերել ավելի քան 500 սիլոսահավաք և եգիպտացորենի կոմբայններ, բազմահազար ցանող, մշակող և այլ աշխատանքների նորագույն մեքենաներ ու գործիքներ։*

*Տեխնիկայի նման հագեցվածության շնորհիվ, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ գրեթե ավարտվել է հողը վարելու, նախացանքային մշակումների, հասկավոր հիմնական կուլտուրաների ցանքի, բամբակի, եգիպտացորենի և այլ շարահերկ կուլտուրաների միջշարային տարածությունների մշակման մեքենայացման աշխատանքները։*

*Հացահատիկի հունձը կոմբայնահարմար տարածություններում գրեթե լրիվ, իսկ սիլոսի մասսայի մոտ 50—60 տոկոսը՝ հավաք-*

վում են կոմբայններով։ Բազմաթիվ սովխոզներում և կոլտնտեսություններում վերջին տարիներին ավելի ու ավելի են մեքենայացվում անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսները՝ արմատավորվել է մեքենայացված ջրամատակարարում, ներֆերմային մեքենայացված տրանսպորտ՝ գոմաղբը ֆերմայից դուրս բերելու համար, կերերի մանրացում, լրիվ չափով մեքենայացվել է ոչխարների խուզը և այլն։ Դաշտավարության աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ հնարավոր դարձավ կուլտուրաների մշակումը կատարել ագրոտեխնիկական սեղմ ժամկետներում, և մեծ թվով աշխատող ձեռքեր ազատվեցին ծանր աշխատանքից, որոնք ուղարկվեցին տնտեսության այլ ճյուղեր՝ արտադրությունը ընդլայնելու համար։ Աշխատանքների մեքենայացումը պայմաններ ստեղծեց ռեսպուբլիկայում առաջ մղելու արդյունաբերական խաղողագործությունը և անասնաբուծությունը, որը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա մասնագիտացման գլխավոր ուղղությունն է հանդիսանում։ Այսպես, 1953 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում պտուղների համախառն արտադրանքը 29 հազար տոննայից, 1962 թվականին



բարձրացել է 32 հազար տոննայի, խաղողինը 57 հազար տոննայից՝ 150 հազար տոննայի։ Կերերի արտադրության ավելացման շնորհիվ մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) 26 հազարից աճել է 42 հազար տոննայի, կաթինը 187 հազարից՝ 311 հազար տոննայի։

Նույն աշխատող ձեռքը նույն մարկայի տրակտորը և կոմբայնը, հողակլիմայական նույնանման պայմաններում օգտագործվում է բոլորովին տարբեր արտադրողականությամբ և ձեռք է բերվում բոլորովին տարբեր արդյունքներ։ Կարելի է թվարկել Արթիկի-Անիի, Վեդու-Արտաշատի, Ամասիայի-Ղուկասյանի, Իջևանի-Շամշադինի, Ստեփանավանի-Կալինինոյի և այլ շրջանների շատ կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնց բնակլիմայական պայմանները և տեխնիկական հագեցվածությունը համընկնում են միմյանց, բայց մեքենա-տրակտորային պարկի օգտագործման տեխնիկատնտեսական ցուցանիշները բոլորովին այլ են։ Որպես օրինակ ուսումնասիրենք Իջևանի ու Շամշադինի և Ստեփանավանի ու Կալինինոյի կոլտնտեսություններում տեխնիկայի օգտագործման որոշ ցուցանիշները։

Իջևանի և Ստեփանավանի շրջանների կոլտնտեսություններն ունեն ավելի շատ տրակտոր, քան նրանց հարևան Շամշադինի և Կալինինոյի շրջանները, բայց Շամշադինում, օրինակ մեկ հեկտար ցանքատարածության հաշվով կատարվել է մոտ 65—70 տոկոսով ավելի մեքենայացված աշխատանք, քան Իջևանում (1961—1962 թթ.)։ Դրա հետևանքով բարձրացել է մեկ 15-ուժանոց տրակտորի հերթափոխի արտադրողականությունը ավելի քան 2 անգամ։ Կալինինոյի շրջանի կոլտնտեսություններում ԴՏ—54 մարկայի տրակտորը տարվա ընթացքում մոտ 30 տոկոսով ավելի բեռնված է աշխատել, քան Ստեփանավանում։ Տրակտորները, կոմբայնները և գյուղատնտեսական մեքենաները բարձր արտադրողականությամբ օգտագործելու շնորհիվ Կալինինոյում և Շամշադինում 10—40 տոկոսով ցածր է տրակտորային աշխատանքների մեկ միավորի (մեկ հեկտար փափուկ վարի) ինքնարժեքը։ Եթե Ստեփանավանում և Իջևանում նույնպես սեփական տեխնիկան օգտագործեին բարձր արտադրողականությամբ, ապա այդ շրջանների կոլտնտեսություններում մեքենայացված աշխատանքների ծավալը կավելանար 45—70 տոկո-



սով և միայն տրակտորային աշխատանքների ինքնարժեքի իջեցումից կտնտեսվեր ավելի քան 7-34,4 հազար ռուբլի միջոցներ։

Կարելի է բերել նաև Վեդու շրջանի օրինակը՝ Այս շրջանի կոլտնտեսությունները վերջին 3—4 տարիներում անփոփոխ կերպով, բամբակի արտադրությամբ և պետությանը բամբակի հումք վաճառելու առաջադրանքների կատարմամբ ընթանում են Արարատյան հարթավայրի մյուս շրջանների առջևից։ Վեդու շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները բարձր ցուցանիշների են հասել նաև խաղողի, կաթի և մսի ու այլ մթերքների արտադրությամբ։

Բանը նրանում է, որ Վեդու շրջանում մեքենա-տրակտորային կայանները վերակազմելուց և տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելուց հետո, բարձր հիմքերի վրա է դրվել աշխատանքի կազմակերպումը, աշխատողների մեջ լայնորեն ծավալվում է մթերքների արտադրության գործում անձնական շահագրգռվածության հզոր գործոնը, և որ գլխավորն է, տեխնիկայի և աշխատանքի օգտագործման մեջ լայնորեն կիրառվում է տեխնիկայի օգտագործման պրոգրեսիվ եղանակներ։ Վեդու շրջանի կոլտնտեսությունները բամբակի տարածու-

թյունների 80—85 տոկոսը ցանում են քառակուսի բնային եղանակով, որը հնարավորություն է տալիս միջշարային մշակումները կատարել երկու ուղղությամբ։

Աշխատանքի կազմակերպման այս առաջավոր եղանակի լայն արմատավորումը հնարավորություն տվեց կոլտնտեսություններին ուժեղացնել պայքարը բամբակի մոլախոտերի դեմ, ժամանակին կատարել ցանքատարածությունների փխրեցումը, բույսերի սնուցումը և այլ պրոցեսներ։ Քառակուսի-բնային եղանակի կիրառման շնորհիվ 2—2,5 անգամով կրճատվեցին ձեռքի քեթմեններով միջշարային մշակումների վրա կատարվող աշխատանքները։ Աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների կիրառումը նպաստեցին 1959—1961 թվականներին բամբակի միջին բերքատվությունը հեկտարից հասցնել 25—28 ցենտների։

Ակնհայտ է, որ տեխնիկան, հողը, աշխատանքային այլ ռեսուրսները բարձր արտադրողականությամբ և առաջավոր մեթոդներով վարելու հետևանքով է, որ Վեդու շրջանը բամբակի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 2—2,3 անգամ ավելի եկամուտ, քան նրա հարևան Արտաշատի շրջանը, կամ Արարատյան հարթավայրի մյուս շրջանները։

Վերը թվարկած օրինակները ցույց են



տալիս, որ տեխնիկան հմտորեն գործադրող առաջավոր տնտեսությունների կողքին ռեսպուբլիկայում կան դեռ ոչ քիչ տնտեսություններ, որտեղ տրակտորները, կոմբայնները, գյուղատնտեսական մեքենաներն ու տեխնիկական մյուս միջոցները օգտագործվում են անբավարար, որի պատճառով կարևորագույն գյուղատնտեսական աշխատանքների զգալի մասը կատարվում է ոչ ժամանակին և ագրոտեխնիկական պահանջների խախտումով։

Այստեղ տեղին է նշել ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1962 թ.) պլենումի որոշման այն մասը, որտեղ ասված է, որ «Անհրաժեշտ է վերացնել այն խայտառակ երևույթը, երբ կլիմայական ու հողային հավասար պայմաններում հանդիպում են ներդրված աշխատանքի յուրաքանչյուր միավորի դիմաց միանգամայն տարբեր արդյունքներ ստացող կոլտնտեսություններ և սովխոզներ։ Այդ դրությունը բացատրվում է առաջին հերթին պատշաճ ղեկավարության բացակայությամբ, եռանդուն, նպատակասլաց աշխատանքի բացակայությամբ այն կոլտնտեսություններում և սովխոզներում, որոնք ետ են մնում առաջավոր տնտեսություններից»։

Պարտիայի մարտյան և նոյեմբերյան պլենումները (1962 թ.) արմատապես վերա-

կառուցեցին գյուղատնտեսական կառավարման սիստեմը, որի նպատակն է խորը կերպով ուսումնասիրել արտադրությունը, յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում արմատավորել գիտության նվաճումները և աշխատանքի առաջավոր մեթոդները, արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր հեկտար հողը։

Պարտիան մշակեց նաև գյուղատնտեսությանը ցույց տրվող նյութատեխնիկական օգնությունը ուժեղացնելու, գյուղատնտեսական մեքենաշինությունը զարգացնելու միջոցառումների լայն սիստեմ։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա զարգացման հետ մեկտեղ, խնդիր է դրվել բարելավել կոլտնտեսություններում և սովխոզներում եղած տեխնիկայի օգտագործումը, նորոգումը և պահպանումը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը այս տարվա մարտի 12-ին Ռուսաստանի Ֆեդերացիայի կոլխոզային-սովխոզային արտադրական վարչությունների և գյուղական պարտիական ղեկավար աշխատողների խորհրդակցությունում խոսելով «Գյուղտնտտեխնիկայի» աշխատանքների բարելավման մասին, առաջադրեց մեքենա-տրակտորային պարկի կոմպլեքսային տեխնիկական սպասարկման կազմակերպման հարցը։ Երկրի բազմաթիվ



մարզերում և շրջաններում «Գյուղատնտտեխնիկայի» առանձին բաժանմունքների օգնությամբ, պայմանագրային կարգով, կատարվում է կոլտնտեսությունների, սովխոզների մեքենա-տրակտորային պարկի կոմպլեքսային տեխնիկական սպասարկում։ Այդ նպատակով յուրաքանչյուր բաժանմունքին կից կազմակերպվում է «տեխնիկական սպասարկման կայան», որը ավտոշրջիկ արհեստանոցների միջոցով տեղերում նորոգում է տրակտորներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Նման աշխատանք մեզ մոտ առաջինը նախաձեռնեց «Գյուղտնտտեխնիկայի» Հոկտեմբերյանի բաժանմունքը և հասավ լավագույն արդյունքների։ Վերջերս հրապարակվեց հոկտեմբերյանցիների դիմումը, որը կոչ է անում մեխանիզատորներին լայնորեն տարածել մեքենա-տրակտորային պարկի կոմպլեքսային տեխնիկական սպասարկման առաջավոր փորձը։ Այժմ մոտ 130 տնտեսություն արդեն արձագանքել են հոկտեմբերյանցիների դիմումին։ Տեխնիկայի սպասարկման այս առաջավոր ձևը արժանի է լայն տարածման։

Յ. ԱՍԱՏՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## (Թվեր և փաստեր)

18 տարի առաջ, 1945 թվականի մայիսի 9-ին, Չեխոսլովակիայի աշխատավորները, հերոսական սովետական բանակի օգնությամբ, ազատագրվեցին ֆաշիստական լծից։

Չեխոսլովակիայի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ բռնեցին սոցիալիզմի կառուցման ուղին։ Նրանք կարճ ժամանակամիջոցում Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների անշահախնդիր օգնության շնորհիվ հասան մեծ հաջողությունների։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

*Ներկայումս Չեխոսլովակիան պողպատի արտադրությամբ մեկ շնչի հաշվով առաջ է անցել Ֆրանսիայից ու Մեծ Բրիտանիայից և հասել է ԱՄՆ-ին։*

*Արդյունաբերական արտադրանքի թողարկումը 1962 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 44 տոկոսով, արտադրության միջոցների արտադրությունը՝ 50 տոկոսով, իսկ սպառման միջոցներինը՝ 34 տոկոսով։*



*Նույն ժամանակամիջոցում ազգային եկամուտն ավելացել է մեկ քառորդով։*

*Ռեսպուբլիկայում բարձր զարգացման է հասել քիմիական արդյունաբերությունը և ճշգրիտ մեքենաշինությունը։ Մինչև 1965 թվականի վերջը քիմիական արդյունաբերությունը կաճի 2 անգամ։ Այդ ժամանակամիջոցում երկրում կկառուցվի 130 քիմիական գործարան։*

*Այն փաստը, որ սոցիալիստական Չեխոսլովակիան ավելի քան 150 արդյունաբերական ձեռնարկություններ է կառուցել Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում, ցույց է տալիս նրա ժողովրդական տնտեսության զարգացման բարձր մակարդակը։*

*Եթե 1958 թվականին Չեխոսլովակիայում մետալուրգիայի արտադրությունը աճեց 8 տոկոսով, ապա այժմ մետաղից պատրաստված նրա արտադրանքը աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը։*

*Երկու տարուց հետո, մինչև 1965 թվականը, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկան մեկ շնչին հասանելիք արտադրանքի քանակով առաջ կանցնի աշխարհի առավել զարգացած կապիտալիստական երկրներից։*

*Պողպատի արտադրությունը 1970 թվականին երկրում կաճի և կհասնի 12 միլիոն տոննայի։*

Ռեսպուբլիկայում բուռն թափով զարգանում է էներգետիկ արդյունաբերությունը։ Անցյալ տարի Չեխոսլովակիայում արտադրվում էր 28,7 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 1965 թվականին այն հասնելու է 39 միլիարդ կիլովատ-ժամի։

Երկու տարի հետո, 1965 թվականի վերջերին Չեխոսլովակիայում կարդյունահանվի 105,6 միլիոն տոննա քարածուխ և կարտադրվի 8,7 միլիոն տոննա ցեմենտ։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Պետական տնտեսությունները և միացյալ գյուղատնտեսական կոոպերատիվները ներկայումս մշակում են վարելահողերի 97,8 տոկոսը։ Երկրում ուժեղ աշխատանք է կատարվում հողը ավելի ռացիոնալ օգտագործելու համար։

Չեխոսլովակիայում գյուղատնտեսությունն ավելի բարձր զարգացման կհասնի առաջիկայում։ Նախատեսված է 1970 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքերն ավելացնել 55—57 տոկոսով։ Նույն թվականին գյուղատնտեսական ամեն մի հեկտարից շուկա կհանվի մոտ 180 կիլոգրամ միս, 340 հատ ձու և 650 լիտր կաթ։

Սոցիալիստական Չեխոսլովակիայում անընդհատ բարձրանում է աշխատավորների նյութական բարե-



կեցությունը։ Այսպ. 1965 թվականի համեմատությամբ, աշխատավորների ռեալ աշխատավարձը աճել է 13 տոկոսով։

Ռեսպուբլիկայում բնակարանային վիթխարի շինարարություն է կատարվել։ Միայն անցած 4 տարում շահագործման է հանձնվել 315 հազար նոր բնակարան։

Տարեցտարի Չեխոսլովակիայում ընդարձակվում է մանկական հիմնարկների ցանցը։ Ներկայումս մանկապարտեզ են հաճախում 305 հազար երեխաներ, որը կազմում է 3—6 տարեկան երեխաների 44 տոկոսը։

Շնորհիվ այն բանի, որ երկրում անընդհատ աճում է ազգային եկամուտը, նախատեսվում է 1970 թվականին բնակչության կողմից մթերքների սպառումն ավելացնել 25 տոկոսով։

Առաջիկայում աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման հետ միասին կկրճատվի նաև աշխատանքային օրվա տևողությունը։ Մինչև 1970 թվականը աստիճանաբար երկրում կիրականացվի 40-ժամյա բանվորական շաբաթվա անցնելու խնդիրը։

Ժողովրդական դեմոկրատիայի տարիներին մեծ փոփոխություններ են տեղի ունեցել աշխատավորների կուլտուրական կյանքում։ Ներկայումս Չեխոսլովակիայում հրատարակվում են ավելի քան 1.500 տարբեր թերթեր և ամսագրեր մոտ 14 միլիոն տիրաժով։

*Այժմ յուրաքանչյուր չեխոսլովակյան ընտանիք ունի ռադիոընդունիչ, երկրում կա ավելի քան մեկ միլիոն հեռուստացույց։*

*Կուլտուրական խոշորագույն նվաճում է այն փաստը, որ ներկայումս Չեխոսլովակիայում կա 60 հազար գրադարան։ Այդ գրադարանների գրքային ընդհանուր ֆոնդը կազմում է 70 միլիոն օրինակ։ Միայն Պրագայի պետական գրադարանում կա 3 միլիոն կտոր գիրք և գրադարանը աշխարհի տարբեր երկրների 140 գրադարանների հետ ունի կապ։*

Առաջիկայում ավելի կծաղկի ու կբարգավաճի սոցիալիստական Չեխոսլովակիան, որովհետև տարեցտարի ամրապնդվում է սոցիալիստական երկրների ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Չեխոսլովակիան ձեռք ձեռքի տված Սովետական Միության և բոլոր սոցիալիստական երկրների հետ պայքարում է սոցիալիզմի և խաղաղության համար։

—.—



# ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՄԱՐՏԵՐԸ ՑՆՑՈՒՄ ԵՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԱՇԽԱՐՀԸ

*Ավելի քան մեկ ամիս Ֆրանսիայի ածխահանքերում լռություն էր տիրում։ Այդ ժամանակաշրջանում չարդյունահանվեց ոչ մի գրամ ածուխ։*

*Ֆրանսիայի ածխահատների այս տարվա մարտի 1-ին սկսված գործադուլը վաղուց էր հասունանում։ Տարվա սկզբին նրանք պահանջեցին բարձրացնել աշխատավարձը, մտցնել 40-ժամյա աշխատանքային շաբաթ, դադարեցնել դեպի ածխարդյունաբերության խեղդում տանող քաղաքականությունը։ Կառավարությունը այդ պահանջները կտրականապես մերժեց։ Եվ այդ ժամանակ հանքագործները հայտարարեցին. «Փող չինի՝ չի լինի նաև ածուխ»։ Աշխատանքները ածխահորերում դադարեցին։ Կառավարությունը փորձեց ածխահատների դեմ կիրառել «ռեկվիզիցիայի», այսինքն՝ հարկադրաբար աշխատանքի մոբիլիզացնելու օրենքը, բայց այն լիովին ձախողվեց։ Ածխահատները հաս-*

տատ հայտարարեցին, որ իրենք շարունակում են գործադուլը։ Նրանց պաշտպանեցին երկրի աշխատավորական լայն խավերը։ Ամենուրեք հանգանակություններ սկսվեցին գործադուլավորների ընտանիքների օգտին։

Ֆրանսիացի հանքագործներին իրենց համերաշխությունը հայտնեց ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը։ Տարբեր երկրների, այդ թվում Սովետական Միության նավահանգըստային բանվորները կտրականապես հրաժարվեցին բառնալու ֆրանսիական կառավարության գնած ածուխը։ Ածխահատներից անմիջապես հետո, պահանջեցին իրենց աշխատավարձը բարձրացնել Ֆրանսիայի արդյունաբերության մի շարք այլ ճյուղերի բանվորներ։ Գործադուլ հայտարարեցին երկաթուղայինները, մեքենաշինարարները, էլեկտրիկները, փոստի ծառայողները։ Հանքագործների պայքարը վերաճեց կառավարության ու ժողովրդի միջև քաղաքական սուր կոնֆլիկտի, աշխատանքի և կապիտալի նոր մենամարտի։ Այդ պայքարը, ինչպես հայտնի է, ավարտվեց ածխահատների լուրջ հաղթանակով։

Օրըստօրե սրվում են կապիտալի երկրներում դասակարգային մարտերի հերոսական տարեգրության էջերը։ Ինչպես և ա-



ռաջներում, աշխատավորների պայքարի գլխավոր ձևն է գործադուլը։ Գործադուլային շարժման արագ աճը այժմյան ռևոլյուցիոն վերելքի առավել բնորոշ հատկանիշներից մեկն է։ Դեռ երբեք այդ շարժումը այդքան մասսայական չի եղել։ Եթե 1957—1958 թվականներին գործադուլավորների թիվը կազմում էր տարեկան 20—25 միլիոն, ապա 1960—61 թվականներին այն գերազանցեց 50 միլիոնից, իսկ 1962 թվականին՝ 60 միլիոնից*։ Հատկապես մեծ չափով աճել է աշխատավորների քաղաքական ակտիվությունը։ Կոնկրետ տնտեսական պահանջների բավարարման համար մղվող պայքարն ավելի ու ավելի օրգանապես է միահյուսվում խաղաղության պաշտպանության շարժման, դեմոկրատիայի, ազգային անկախության, սոցիալական ու քաղաքական արմատական վերափոխումների համար մղվող պայքարի հետ։ 1961 թվականին քաղաքական բնույթի գործադուլները կազմեցին բոլոր գործադուլների 60, իսկ 1962 թվականին՝ մոտավորապես 65 տոկոսը։

*) Հաշվարկները կատարվել են ՍՍՌՄ ԳԱ համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտում։

Պայքարի ավանգարդում ընթացող արդյունաբերական պրոլետարիատի հետ միասին իրենց իրավունքների պաշտպանման համար, շահագործողների ուժեղացող ճնշման դեմ ակտիվորեն հանդես են գալիս գյուղատնտեսական բանվորներն ու գյուղացիները, քաղաքի միջին խավերը։ Գործադուլներն ու ցույցերն ընդգրկել են ինչպես կապիտալիզմի «կենտրոնները» (Արևմտյան Եվրոպա, ԱՄՆ, Ճապոնիա), այնպես էլ նրա «ծայրամասերը»՝ Լատինական Ամերիկայի, Ասիայի և Աֆրիկայի երկրները։

Դասակարգային շատ կռիվներ աչքի են ընկնում բացառիկ սրությամբ։ Մոնոպոլիաների և հաճախ բռնության բոլոր միջոցները օգտագործող կառավարությունների դաշինքի դեմ մղվող պայքարում աշխատավորները ցուցադրում են իրենց բարձր կազմակերպվածությունն ու կայունությունը։ Այդ պայքարի ձևերը շատ բազմազան են։ Հատկապես մեծացել է աշխատավորների խոշոր ելույթների՝ էկոնոմիկայի մեկ կամ մի քանի ճյուղերի մասշտաբով կազմակերպվող գործադուլների, ընդհանուր գործադուլների, ընդհանուր պահանջների համար պայքարի ազգային օրերի, միասնական գործողությունների օրերի դերը։ Անցյալ տարի և այս



տարվա սկզբին տեղի ունեցան մոտ 20 համազգային գործադուլներ։

Այս ամենը վառ կերպով հաստատում է ՍՄԿՊ ծրագրում գրված բառերի արդարությունը՝ «Կապիտալիզմի երկրները մշտապես ցնցվում են դասակարգային մարտերից։ Ծավալվում են բանվոր դասակարգի մարտական ելույթները հօգուտ իր տնտեսական և քաղաքական շահերի պաշտպանության»։

Կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարի նոր վերելքը վկայում է, որ կապիտալիզմին հատուկ անտագոնիստական հակասությունները ներկայումս ավելի են խորացել և սրվել։ Ռևոլյուցիոն շարժման աճն արտացոլում է բուրժուական կարգերի արագ նեխումը, նրա տնտեսական ու քաղաքական անկայունության աճը։

Դասակարգային հակասությունների խիստ սրումը զարգացած կապիտալիստական երկրներում առաջին հերթին բացատրվում է մոնոպոլիաների ճնշման ուժեղացմամբ, մոնոպոլիաներ, որոնք գիտատեխնիկական պրոգրեսն օգտագործում են իրենց օգտին։ Այդ սրմանը նպաստում են նաև պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի հետագա զարգացումը, միլիտա-

րիզմի աճն ու քաղաքական ռեակցիայի հարձակումը։

Վերջին ժամանակներս նկատվում է հըզոր կապիտալիստական երկրների տնտեսական զարգացման տեմպերի դանդաղում, որը հանգեցրել է համաշխարհային շուկաներում այդ երկրների ավելի դաժան մրցակցության։

Հանուն ապրանքների «մրցունակության» մոնոպոլիաները աշխատում են ինտենսիվացնել աշխատանքը, դիմադրում են աշխատավարձը բարձրացնելու և աշխատանքային շաբաթվա տևողությունը կրճատելու բանվորների պահանջներին։ Շատ երկրների (ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Ավստրիայի, Հոլանդիայի) կառավարություններ իրականացնում են աշխատավարձի «սառեցման» քաղաքականություն։ Այդ նույն նպատակով նրանք մեծ մասշտաբներով տեխնիկական և կառուցվածքային վերափոխման են ենթարկում էկոնոմիկան։ Որոշ ճյուղեր՝ ածխարդյունաբերությունը, տեքստիլ արդյունաբերությունը, նավաշինությունը կծկվում են։ Այդ քաղաքականության զոհ են դառնում հարյուր հազարավոր աշխատավորներ։

Աշխատավորներն ուժեղ հակահարված են տալիս իրենց կենսամակարդակի վրա մոնո-



պոլիստական կապիտալի հարձակմանը։ ԱՄՆ-ում գործադուլային մարդ-օրերի թիվը 1962 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, մեծացել է 17 տոկոսով։ Անցյալ տարվա վերջին բռնկվեց 70 հազար բեռնակիրների ընդհանուր գործադուլը։ Կառավարությունն արգելեց այն, կիրառելով Տաֆտ-Հարտլիի օրենքը։ Բայց հենց որ լրացավ արգելման՝ օրենքով նախատեսված 80-օրյա ժամկետը, գործադուլը կրկնվեց և միամսյա պայքարից հետո ավարտվեց բանվորների հաղթանակով։ Հարյուր տասնչորս օր տևեց Նյու-Յորքի տպագրիչների գործադուլը։ Այդ ժամանակաշրջանում լույս չտեսան բազմաթիվ խոշորագույն թերթեր։ Այս գործադուլի ժամանակ ևս հաղթեցին աշխատավորները։

Նման պատկեր կարելի է տեսնել նաև մյուս երկրներում։ Գործադուլավորների թիվն Անգլիայում անցյալ տարի հասավ գրեթե չորս և կես միլիոնի՝ վեց անգամ ավելի, քան նախորդ տարում։ Իտալիայում գործադուլ արեց ավելի քան վեց միլիոն մարդ։ Ճապոնիայում արհմիություններն ամեն տարի գարնանը, կոլեկտիվ պայմանագրերի վերակնքման ժամանակաշրջանում, կազմակերպում են աշխատավորների «գարնանային

հարձակում»: Անցյալ տարի դրան մասնակցեց հինգ և կես միլիոն, այս տարի՝ ավելի քան վեց միլիոն բանվոր ու ծառայող: Գործադուլային շարժումն ուժեղացել է ԳՖՌ-ում, Ավստրիայում, Կանադայում, Նորվեգիայում և շատ այլ երկրներում: Գործադուլային համառ մարտերի շնորհիվ կապիտալիստական երկրների աշխատավորներին հաջողվեց անցյալ տարի վիժեցնել աշխատավարձը «սառեցնելու» մոնոպոլիաների պլանները:

Աշխատանքից մասսայաբար ազատելու դեմ բողոքի առավել վառ գործադուլներից մեկն էր Ֆրանսիական Դեկազվիլ ավանի հանքագործների պայքարը: Նրանք երկու ամիս դուրս չեկան հանքերից, ցուցադրելով իրենց անընկճելի կամքն ու հաստատակամությունը: Պատասխանելով բուրժուական մամուլի հարձակումներին, որոնցով գործադուլավորները մեղադրվում էին ծայրահեղ հետադիմության մեջ, գործադուլի մասնակիցներից մեկը պատասխանեց. «Մենք աշխատանքի մարդիկ ենք, և մենք ուզում ենք աշխատել: Մենք չենք ցանկանում դառնալ միջազգային մոնոպոլիաների խաղի զոհերը»:

(Շարունակելի)



# ԱՇԽԱՏՈՒՄ ԵՆ ԱՌԱՆՑ ԵՐԿՏԱՐԵՑԻՆԵՐԻ

Ավարտվել է ռեսպուբլիկայի դպրոցների վերակառուցումը և ամենուր այժմ ուժի մեջ է մտել ութամյա պարտադիր կրթության օրենքը: Եթե 1960—61 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում էին 257 արտադրական ուսուցմամբ միջնակարգ, 382 ութամյա և 170 տարրական դպրոցներ, ապա 1962—1963 ուսումնական տարում, վերակառուցման ավարտումից հետո, գործում են 363 արտադրական ուսուցմամբ միջնակարգ, 715 ութամյա և 157 տարրական դպրոցներ:

Է՛լ ավելի է բարելավվել դպրոցների ուսումնանյութական պայմանները: Ռեսպուբլիկայում կառուցվել ու շահագործման են հանձնվել 146 նոր դպրոցական շենքեր՝ 48.856 ընդհանուր աշակերտական տեղով: Դպրոցներում կազմակերպվել են բազմաթիվ ուսումնական արհեստանոցներ ու լաբորատորիաներ: Ռեսպուբլիկայում այժմ

446 դպրոցներ անցել են մեկհերթյա պարապմունքի։ Աճել է նաև սովորողների թիվը։ Եթե 1958—1959 ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցներում սովորում էին 279.720 աշակերտ, ապա ընթացիկ ուսումնական տարում նրանց թիվը հասնելու է 385.397-ի։

Վերակառուցման ընթացքում դպրոցահասակ երեխաներին ուսման մեջ ընդգրկելու և նրանց ուսումնադաստիարակչական աշխատանքները բարձր հիմքերի վրա դնելու գործում մեծ նշանակություն ու մասսայականություն ստացավ առանց երկտարեցի աշխատող առաջավոր ուսուցիչների փորձը։ Հանրահայտ է այն ճշմարտությունը, որ երկտարեցիությունը մեծ չարիք է, այն մեր հասարակությանը հասցնում է մեծ վնասներ։

Ահա այս էր պատճառը, որ փոթորկվեցին հարյուրավոր լավագույն մանկավարժներ։ Նրանք սկսեցին մտածել, փնտրել ու մշակել ուսուցման դասավանդման այնպիսի ձևեր, որով հնարավորություն ըստեղծվեր աշխատելու առանց երկտարեցիության։ Այս դժվարության լուծման առաջին ծիծեռնակները հանդիսացան Դոնի-Ռոստովի № 1 դպրոցի մանկավարժական



կոլեկտիվի անդամները, որոնց փորձը սկզբում մեծ ընդունելություն գտավ իրենց մարզի մանկավարժական կոլեկտիվների կողմից, ուր 756 դպրոցներ արդեն աշխատում են առանց երկտարեցիների, իսկ ապա լայն տարածում ստացավ ամբողջ երկրով մեկ։

Առանց երկտարեցիների ձգտումով են աշխատում նաև մեր ռեսպուբլիկայի շատ դպրոցների մանկավարժական կոլեկտիվները։ Հանդես եկան ուսուցման պրոցեսի վերակառուցման բազմաթիվ էնտուզիաստներ, որոնք ջանքեր չեն խնայում աշակերտներին խոր ու հաստատուն գիտելիքներով զինելու և երկտարեցիությունը լրիվ հաղթահարելու համար։

Մեր ռեսպուբլիկայում այժմ մեկ միջնակարգ և 117 տարրական ու ութամյա դպրոցներ աշխատում են առանց երկտարեցիների։ Ավելի քան 700 ուսուցիչներ վերջին երկու-երեք տարիների ընթացքում չեն տվել ոչ մի երկտարեցի։ Է՛լ ավելի հետաքրքիր ու բազմաբովանդակ է դարձել նրանց աշխատանքը դպրոցը կյանքի հետ կապելու, սովորողների դաստիարակությունը նոր, հետաքրքիր ու բովանդակա-

լից ձևով ու մեթոդներով կազմակերպելու գործում։

Ռեսպուբլիկայում հայտնի է Երևանի Մայակովսկու անվան դպրոցի V—VIII դասարանների ռուսաց լեզվի ուսուցչուհի ընկ. Մ. Բայպթյանի անունը։ Արդեն չորրորդ տարին է, ինչ ընկ. Բայաթյանը թեթևացրել է աշակերտների տնային աշխատանքները։ Ընկ. Բայաթյանի աշխատանքը մեծ արմատավորում է գտել իր աշխատանքային ընկերների մոտ։ Վ. Մայակովսկու անվան դպրոցի ուսուցիչներ Վ. Կիրակոսյանը, Ե. Մառը, Մ. Կանդանովան, Ի. Վարդանյանը և ուրիշներ ընդօրինակել են ընկ. Բայաթյանին և դասը վարում են նոր ձևով։ Ընկ. Մ. Բայաթյանը լուծել է իր դասավանդած առարկայից աշակերտների նորմալ բեռնվածության հարցը։ Նրա աշակերտների գրած շարադրություններում աչքի է ընկնում անկեղծությունը, նրանց հետաքրքրությունը կյանքի երևույթների նկատմամբ։

Իջևանի շրջանի Աչաջրի արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցի ուսուցչական կոլեկտիվը, որին գլխավորում է հմուտ մանկավարժ, ՀՍՍՌ վաստակավոր



ուսուցիչ ընկ. Ղալթախչյանը ջանք չի խնայում ուսուցման պրոցեսը կյանքին մոտեցնելու, նրա կազմակերպման նոր ձևեր ու մեթոդներ փնտրելու գործում, որի շնորհիվ շատ ուսուցիչներ վերջին երկու տարում գրեթե աշխատում են առանց երկտարեցիների։ Այստեղ ուսուցումը կազմակերպել են այնպես, որ դասի ընթացքում յուրաքանչյուր աշակերտ հանդես է գալիս ակտիվ կերպով, ուսումնական աշխատանքի ամբողջ ծանրությունը տեղափոխվում է դասարան և աշակերտը մեծ մասամբ նյութին տիրապետում է դասի ընթացքում, որը թեթևացնում է աշակերտի ընդհանուր ծանրաբեռնվածությունը։ Նոր դիդակտիկայի միջոցով շատ առաջավոր ուսուցիչներ վերակառուցելով դասը օրեցօր զարգացնում են երեխաների տրամաբանական մտածողությունը, որով իսկ աշակերտը ձեռք է բերում ստացած գիտելիքները կյանքում իրագործելու ունակություններ։

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի հրահանգիչ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայկական ՍՍՌ քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը կրոնի վերաբերյալ լույս է ընծայել հետևյալ գրքույկները.

Թ. ԽՍԱՅԱՆ— Մարքսիզմ-լենինիզմը կրոնի մասին, 1963 թ., 12 էջ, գինը 5 կոպեկ:

Գրքույկում համառոտակիորեն քննարկված է կրոնի առաջացման պատճառները: Քննադատելով իդեալիզմի գրքերի վրա կանգնած բուրժուական գիտնականներին, հեղինակը ցույց է տալիս, որ նրանք սխալ ըմբռնելով հասարակական կյանքի զարգացման պրոցեսները, չեն կարողացել ճիշտ բացահայտել կրոնական հավատալիքների առաջացման պատճառները:

Գրքույկում տրված է նաև կրոնի ծագման ու էության մատերիալիստական բացատրությունը:

Վերջում խոսվում է հաղթանակած սոցիալիզմի երկրում կրոնի դեմ ճիշտ պայքար կազմակերպելու մեթոդների մասին:

Հ. ԲԱՏԻԿՅԱՆ— Ժամանակակից բիոլոգիան և կրոնը, 1963 թ., 16 էջ, գինը 5 կոպ.:

Գրքույկում համառոտակի շարադրված են բիոլոգիայի նվաճումների մասին: Հեղինակը ցույց է տալիս, որ բիոլոգիայի և գիտության մյուս ճյուղերի փիլիսոփայության հայտնագործումները մեծ հարված են






հասցնում կրոնական նախապաշարմունքներին ու սնոտիապաշտություններին, որոնք ավելի աննշան տեղ են գրավում հասարակական կյանքում:

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Պատկերացում հոգու մասին, 1963 թ., 14 էջ, գինը 5 կոպ.:

Այստեղ պատմվում է այն մասին, որ հոգու պատկերացումը մարդկանց մոտ ձևավորվել է աստծու պատկերացումից շատ առաջ, նրա առեղծվածն է մարդկանց կերպարանքի տակ պատկերացման շեմքին: Քննադատելով աստծու պատկերացման մասին կրոնի իրարակերպ հոգու պատկերացման մասին կրոնի իրարամերժ տեսակետները, հեղինակը օրինակներով պարզաբանում է, որ աստված, հոգին և այլն առեղծված են մարդու կողմից:

Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Քրիստոնեության տարածումը Հայաստանում և նրա հետևանքները, 1963 թ., 27 էջ, գինը 6 կոպ.:

Գրքույկում համառոտակիորեն շարադրված են Հայաստանում քրիստոնեության տարածման շարժառիթները: Կոնկրետ պատմական փաստերով ցույց է տրվում, որ հայ ժողովրդի պատմության մեջ ամենաուժեղ կենտրոնախույզ ուժը եղել է եկեղեցին, որն իր տիրապետությունը երկրում պահպանելու համար համառ պայքար է մղել միասնական պետականության դեմ և դրանով մեծ վնաս հասցրել հայրենիքի պաշտպանությանը:

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ԻՆԴԵՔՍ՝ 77704

Отдел идеологической работы
ЦК КП Армении

# АГИТАТОРИ БЛОКНОТ

# № 9

1963

ՎՖ 10040 Պատվեր 388 Տիրաժ 8402

Հանձնված է արտադրության 27/IV 1963 թ.
Ստորագրված է տպագրության 8/V 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։